Հովհաննիսյան, Պետրոս (2001) *Նիկողայոս Ադոնցի գիտական ժառանգության նորահայտ էջերից.* Պատմա-բանասիրական հանդես, № 2 . pp. 277-290. ISSN 0135-0536



# ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑԻ ԳԻՏԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՀԱՅՏ ԷՋԵՐԻՑ

*«Պատմա-բանասիրական հանդեսի» 2001 թ. №1-ում տպագրված «Ն. Ադոնցի «Հայոց քննական պատմության» ստեղծագործական ճակատագիրը (ծննդյան 130-ամյակի առթիվ)» հոդվածից (էջ 63–78) ակներև է դառնում, որ կյանքի վերջին տարիներին ականավոր պատմաբանը ձեռնամուխ էր եղել ֆրանսերեն բազմահատոր մի աշխատության ստեղծմանը, որն ամփոփելու էր հայ ժողովրդի ամբողջական պատմությունը՝ հնագույն ժամանակներից մինչև իր օրերը: Սակայն Ն. Ադոնցը հասցրեց գրել բազմահատորյակի միայն առաջին՝ Հայաստանի հնագույն շրջանի պատմությանը վերաբերող հատորը, որն ավարտվում է Ուրարտուին նվիրված գլխով և հայերի ծագման հիմնահարցին աղերսվող կիսավարտ մի ուսումնասիրությամբ:*

*Համազգային Բեյրութի գրական պահոցում գտնվող Ադոնցի արխիվի նյութերից պարզվում է, որ սևագիր վիճակում այստեղ առկա են նաև «Հայոց քննական պատմության» 2-րդ և 3-րդ հատորների վերաբերյալ բազմաթիվ նյութեր՝ գլուխներ, ամբողջական բաժիններ: Նյութերը հիմնականում անմշակ վիճակում են, դրանք վերջնական անհրաժեշտ շտկման ու ճշգրտման կարիք ունեն, այսինքն՝ գտնվում են նախնական, սևագիր տարբերակում: Սակայն նյութերից մի քանիսը թողնում են ավելի մշակված տպավորություն և որոշ խմբագրական միջամտությունից հետո կարելի է դրանք տպագրել և ներկայացնել գիտական ու ընթերցող հասարակայնությանը:*

*Ադոնցյան յուրաքանչյուր անտիպ գործ անսքող հետաքրքրություն է ներկայացնում և, բնականաբար, ծանոթությունն այդպիսի նյութերի հետ առավել ամբողջական պատկերացում կտա Ադոնց պատմաբանի ոչ միայն ստեղծագործական լաբորատորիայի ու աշխատաոճի, այլև նրա գիտական հետաքրքրությունների ու այն մեծ պատասխանատվության մասին, որով նա մոտենում էր իր առջև դրված խնդիրներին: «Հայոց քննական պատմությունը», որ եղավ ականավոր պատմաբանի ստեղծագործական ժառանգության վերջին էջը և նրա գիտական երկարամյա գործունեության ամփոփումը, անշուշտ, արժանի է ավելի հետևողական ու լուրջ ուսումնասիրության: Լիահույս ենք, որ սույն հրապարակումը կնպաստի Ն. Ադոնցի գիտական ժառանգության համակողմանի ուսումնասիրությանը:*

*Ստորև ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում երկու փոքրիկ բնագրեր նյութերի այն հսկայական քանակությունից, որ առկա են նշված արխիվում: Նյութերի ընտրությունը պայմանավորված է ոչ միայն դրանց խիստ հետաքրքրությամբ, այլև նրանով, որ դրանք առավել մշակված տարբերակի տպավորություն են թողնում: Միհրդատ Եվպատորին և Տիգրան Մեծին նվիրված ադոնցյան այս դրվագները գրվել են XX դարի 30-ական թվականների վերջերին – 40-ական թվականների սկզբներին, 1941 թ. աշնանից ոչ ուշ:*

*Մինչ այդ, համաշխարհային պատմագրության մեջ առանձին փորձեր կատարվել էին Տիգրան Մեծի գործունեությունը վեր հանելու ուղղությամբ, փորձեր, որոնց Ն. Ադոնցը քաջատեղյակ էր և դրանք օգտագործեց իր ուսումնասիրություններում: Նկատի ունենք Թ. Մոմզենի (1856), Թ. Ռեյնակի (1890), Կ. Էքհարդի (1909–1910), Ֆ. Գեյերի (1936) և այլոց ուսումնասիրությունները, որոնք սակայն Տիգրանին գնահատելիս աչառու էին և միա-*

կողմանի: Փաստորեն Ն. Ադոնցը առաջին պատմաբաններից էր, որ հրապարակի վրա գտնվող սկզբնաղբյուրների քննական վերլուծության միջոցով փորձեց վեր հանել Հին աշխարհի քաղաքական, ռազմական ու պետական այդ ինքնատիպ գործչի իրական նկարագիրը: Բնականաբար, Ն. Ադոնցը ծանոթ չէր Հրանտ Ք. Արմենի և Հ. Մանանդյանի մենագրություններին, որոնք լուրջ ներդրումներ են հիմնահարցի ուսումնասիրության բնագավառում և իրերի տարօրինակ զուգադիպությամբ լույս տեսան նույն՝ 1940 թվականին[1]: Այնուհետև, երկար տարիներ, Տիգրան Մեծի գործունեության լուսաբանումը գարձյալ մոռացության մատնվեց: Եվ միայն 60-ական թվականների կեսերից սկսած հայ պատմաբանները կարողացան վեր հանել Տիգրան Մեծի քիչ թե շատ իրական նկարագիրը: Այդ տարիների ընթացքում լույս տեսան հայ ժողովրդի պատմության բուհական և ակադեմիական հատորների համապատասխան բաժինները[2], մի շարք ուշագրավ ուսումնասիրություններ, որոնցից կառանձնացնեինք Գ. Խ. Սարգսյանի[3], Ս. Մ. Կրկյաշարյանի[4], Ժ. Գ. Էլչիբեկյանի[5] և Ռ. Լ. Մանասերյանի[6] աշխատությունները: Հետաքրքիր է, որ Տիգրան Մեծին նվիրված ադոնցյան նորահայտ բնութագրումները ոչ միայն թարմ են ու ինքնատիպ, ոչ միայն հարստացնում են արդեն շատ կողմերով հայտնի պատմական գործչի կերպարը, այլև համահունչ են ժամանակակից հայ պատմաբանների կողմից արծարծված բազում հարցադրումների:

Հրապարակվող բնագրերը, որ, ինչպես ասվեց, պահվում են Համազգայինի Բեյրութի գրական պահոցում (պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Բ, թղթածրար 2, №12 և 14), գրված են 18 մեծադիր էջերի վրա (22×30): Առանձին հատվածներ համարյա անընթեռնելի են, որոշ էջեր ընդմիջարկված են ժամանակագրական բազմաթիվ հաշվարկներով և միայն հեղինակին հասկանալի առանձին արտահայտություններով: Նիկողայոս Ադոնցի ծանոթագրությունները տալիս ենք աստղանիշով՝ տողատակում, մեր ծանոթագրությունները, որ համարակալված են, բերվում են հրապարակման վերջում:

Մեր խորազգա շնորհակալությունն ենք հայտնում Մաշտոցի անվ. Մատենադարանի աշխատակցուհի Ա. Շահումյանին՝ ֆրանսերեն բնագրերի հայերեն թարգմանության համար:

ՊԵՏՐՈՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

1 H. K. A r m e n. Tigranes the Great. A biography. Detroit, 1940: Տե՛ս նաև նույնի հայերեն թարգմանությունը՝ Բեյրութ, 1947, Կահիրե, 1957: Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն. Տիգրան Բ և Հռոմը. Երևան, 1940: Տե՛ս նաև նույնի վերահրատարակությունները՝ Երևան, 1972, 1977, ինչպես նաև ռուսերեն՝ Երևան, 1943 և ֆրանսերեն՝ Լիսաբոն, 1963 թարգմանությունները:

2 Հայ ժողովրդի պատմություն. հ. 1, Երևան, 1963, 1975 (բուհական դասագիրք, բաժնի հեղինակ՝ Հ. Գ. Ժ ա մ կ ո չ յ ա ն), Հայ ժողովրդի պատմություն. հ. 1, Երևան, 1971 (բաժնի հեղինակ՝ Գ. Խ. Ս ա ր գ ս յ ա ն):

3 Г. Х. С а р к и с я н. Тигранакерт. М., 1960.

4 Ս. Մ. Կ ր կ յ ա շ ա ր յ ա ն. Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ. Երևան, 1970:

5 Ժ. Գ. Է լ չ ի բ ե կ յ ա ն. Հայաստանը և Սելևկյանները. Երևան, 1979:

6 Ռ. Լ. Մ ա ն ա ս ե ր յ ա ն. Տիգրան Մեծ. Հայաստանի պայքարը Հռոմի և Պարթևստանի դեմ (մ.թ.ա. 94–64 թթ.). Երևան, 1987:

Ն. ԱԴՈՆՑ

ա. ՄԻՀՐԴԱՏ ԵՎՊԱՏՈՐ

*Այն բանից հետո, երբ 133 թվականին Պերգամոնի արքան[1] իր թագավորությունը կտակեց հռոմեական ժողովրդին, ոմն Արիստոնիկոս[2] բռնագրավեց այդ երկիրը: Հարևան երկու երկրների արքաները՝ Պոնտոսի Միհրդատ Էվերգետեսը (169–121)[3] և Կապպադովկիայի Արիարաթես Փիլոպատորը[4] օգնության եկան հռոմեացիներին՝ պայքարելու Արիստոնիկոսի դեմ: Տեղի ունեցած պատերազմի ընթացքում, մոտավորապես 130 թվականին, Կապպադովկիայի արքան զոհվեց: Որպես պարգև Պոնտոսի թագավորն ստացավ Վերին Փռյուգիան, իսկ Կապպադովկիայի սպանված թագավորի ժառանգները՝ Լիկաոնիան և Կիլիկիան: Ըստ Ապպիանոսի[*], այդ դեպքերից քիչ անց, Պոնտոսի թագավորը ներխուժեց Կապպադովկիա: Օգտվելով խառնակ իրավիճակից՝ զոհված թագավորի այրին սպանում է իր բոլոր որդիներին, բացառությամբ մեկի, և իր դուստր Լաոդիկեին Արիարաթես Փիլոպատորի որդի Արիարաթես Եպիփանեսի[5] հետ ամուսնացնելուց հետո, հեռանում է:*

*Պոնտոսի թագավոր Միհրդատ Էվերգետեսը նույնպես սպանվում է և իշխանությունն անցնում է նրա այրուն և երկու որդիներին՝ Միհրդատ Եվպատորին[6] և Միհրդատ Քրեստոսին: Յոթ տարի տևող խնամակալությունից հետո այրի թագուհին ևս սպանվում է: Ըստ Վալերիոս Մաքսիմոսի[**], Միհրդատ Եվպատորն էր սպանել իր հորը: Այժմ նա ազատվում է նաև իր մորից: Նրան է վերագրվում նաև իր փեսայի և քրոջ սպանությունը Կապպագովկիայում[***]:*

*Հուստինոսը պնդում է[****], որ նա Գորդիոսի[7] միջոցով էր սպանել իր փեսա Արիարաթես Եպիփանեսին (դրախմաները նրան տասնհինգ տարվա թագավորություն են տալիս): Միհրդատ Եվպատորը դաշնակցել էր Բյութանիայի թագավոր Նիկոմեդեսի[8] հետ՝ Պափլագոնիա ներխուժելու համար, որը վաղօրոք նրանք բաժանել էին միմյանց միջև: Մոտ 104 թվականին Միհրդատը ներխուժում է Սինոպե: Հռոմը պահանջում է, որ այգ երկրներին վերադարձվի նախկին կարգավիճակը: 103 թվականին Միհրդատ Եվպատորի կողմից Հռոմ ուղարկված դեսպաններին հաջողվում է հարցը լուծել հօգուտ Պոնտոսի:*

*Այժմ Միհրդատն իր ուշադրությունը բևեռում է դեպի Կապպադովկիա և ցանկանում տապալել նաև իր կողմից սպանված Արիարաթեսի որդուն[9]: Նիկոմեգեսը, որը նախապես տեղեկացել էր այդ ծրագրի մասին, հանկարծակի ներխուժում է Կապպադովկիա: Այրի թագուհին[10] դիմում է իր եղբոր՝ Միհրդատի օգնությանը: Եվպատորը դուրս է քշում բյութանացուն և գահին բազմեցնում իր զարմիկ Արիարաթես Փիլոմետորին,*

---

* A p p i a n i. Mithr., 10.

** V a l e r i  M a x i m i. Factorum, 9, 11.

*** *Բանակին հասցեագրած իր ուղերձում, Միհրդատ Եվպատորը խոստովանում է, որ ինքը Կապպադովկիան նվաճել է սպանելով այդ երկրի թագավորին* (J u s t., XXXVIII, 7):

**** J u s t., XXXVIII, 1.

թեև նրա մայրն արդեն հաշտվել էր Նիկոմեդեսի հետ և անգամ ամուսնացել վերջինիս հետ:

Միհրդատը նախատեսել էր, որ Գորդիոսը պետք է առաջնակարգ դեր կատարեր Արիարաթեսի արքունիքում՝ դառնալով նրա ավագ նախարարը: Սակայն Արիարաթեսը վրդովվում է, տեսնելով թե ինչպես է իր հորը սպանողը հաստատվում արքունիքում: Միհրդատը որոշում է իր ծրագիրն իրականացնել զենքով: Արիարաթեսը վճռում է զենքին պատասխանել զենքով և ստիպում Միհրդատին հրաժարվել բռնությունից[*]:

Միհրդատը խաբեությամբ ծուղակն է գցում Արիարաթեսին: Նա տեսակցության է հրավիրում իր զարմիկին և նենգաբար դաշունահարում դժբախտ թագավորին: Միհրդատն իր ութամյա որդուն անմիջապես կարգում է Կապպադովկիայի թագավոր, որը ստանում է Արիարաթես Փիլոպատոր[11] անունը (100թ): Սակայն կապպադովկիացիները ապստամբում են Միհրդատի տիրապետության դեմ[12] և թագավոր հռչակում իրենց սպանված արքայի եղբորը[3]: Միհրդատը պատերազմում է նրա դեմ և դուրս քշում Կապպադովկիայից: Քիչ անց սա ևս սպանվում է: Նիկոմեդեսը և նրա կին Լաոդիկեն՝ Կապպադովկիայի նախկին թագուհին, Կապպադովկիայի գահը խնդրում են Լաոդիկեի կարծեցյալ երրորդ որդու համար, որին նա իբր թե ունեցել էր Արիարաթեսից[14]: Իր հերթին Միհրդատն էլ, Գորդիոսի միջոցով, առանց դույզն իսկ անհարմար զգալու, փորձում է համոզել Սենատին, թե Կապպադովկիայում գահ բարձրացված մանուկը Արիստոնիկոսի դեմ պատերազմում զոհված Արիարաթես Փիլոպատորի որդին է[15]:

Սենատը հրամայում է չափազանց գործունյա այս թագավորներին անմիջապես թողնել գրավված տարածքները: Նիկոմեդեսը պետք է ազատեր Պափլագոնիան, իսկ Միհրդատը՝ Կապպադովկիան: Երկու երկրներն էլ Հռոմի կողմից հռչակվում են անկախ պետություններ: Կապպադովկիացիները թագավոր են խնդրում և Սենատը նշանակում է թագավոր - Արիոբարզանեսին (95 թ. առաջ)[16]:

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Արիոբարզանես**՝ *34 տարի – մինչև 62 թ.: Հետևաբար նա թագավորել է 95 թվականից:*

**Միհրդաա Եվպատորի որդին** *– ըստ դրախմաների թագավորել է 5–6 տարի: Այսինքն՝ 101–100–95 թվականները[17]:*

*Սակայն սկզբնապես Կապպադովկիան հռչակվել էր հանրապետություն – 96 թվական:*

**Փլոմետոր** *(նրա զարմիկը) – ըստ դրախմաների թագավորել է 12 տարի: Այսինքն՝ 114–102 թվականներին:*

**Եպիփանես** *(նրա փեսան) – թագավորել է 15 տարի: Այսինքն՝ 129–114 թվականներին:*

---

* J u s t. XXX, 1 (Auxilianfibus fonefimis regibus՝ *«Զսպվելով հարևան արքաների կողմից»*):

Միհրդատը բանակցություններ է սկսում Տիգրանի հետ՝ Արիոբարզանեսի դեմ պատերազմելու համար: Այդ առաջելությունը հանձնարարված էր Գորդիոսին: Որպեսզի Տիգրանն իրեն չկասկածի երկդիմության մեջ, Միհրդատը նրան կնության է տալիս իր դուստր Կլեոպատրային[*]: Այնուհետև Տիգրանը ներխուժում է Կապպադովկիա: Արիոբարզանեսը փախչում է Հռոմ իր հետ տանելով գանձերը: Պոմպեոս Տրոգոսը կարծում է, թե Միհրդատը, Տիգրանի օգնությամբ, դարձյալ տիրանում է Կապպադովկիային[**]: Արդի պատմաբանները մեխանիկորեն կրկնում են այս տեսակետը, առանց փորձելու պարզաբանել Տիգրանի գործողությունների իրական շարժառիթները: Արիարաթես Փիլոմետորը, այսինքն՝ Միհրդատի ղարմիկը իր հարևանների օգնությամբ էր հետ մղել Միհրդատին: Այդ հարևաններից մեկն, անկասկած, Ծոփքի արքան էր[19], որը 100 տաղանդով պահանջել էր Ֆորնիզա ամրոցը[***]: Հղանալով Ծոփք ներխուժելու միտքը՝ Տիգրանը շահագրգռված էր թուլացնելու նրա դաշնակից Կապպադովկիային: Հասկանալի է, որ նա հաճույքով է ընդունում Գորգիոսի առաջարկը: Սենատը վճռում է պաշտպանել Արիոբարզանեսին և հանձնարարում է Կոռնելիոս Սուլլային, որն այդ ժամանակ նշանակվել էր Կիլիկիայի պրետոր, Կապպադովկիայի արքային ուղեկցել իր թագավորություն: Սուլլայի զորքը մեծաքանակ չէր, սակայն նա օգտվում է դաշնակիցների ծառայություններից, որոնք իրենց հավատարմությամբ ու եռանդով օգնում են նրան մեծ թվով կապպադովկիացիների և նրանց օգնության եկած էլ ավելի մեծ թվով հայերի ջարդելու, ինչպես նաև Գորդիոսին դուրս քշելու և Արիոբարզանեսին գահին վերահաստատելու գործում[****]:

Սուլլան պրետոր է եղել Հռոմի թվարկության 661 թվականին, այսինքն մ.թ.ա. 92 թվականին: Արիոբարզանեսի վերահաստատումը գահին հավանաբար վերաբերում է 91 թվականին[*****]:

Այդ ժամանակ է, որ սկիզբ են առնում քաղաքական հարաբերությունները Հռոմի և Պարթևստանի միջև: Կասկածից վեր է, որ հենց Սուլլան էր, որ դիմել էր պարթևների օժանդակությանը, որպեսզի ապահովեր Կապպադովկիայում Տիղրանի դեմ հակամարտությունում իր ունեցած հաջողությունը: Իզուր է Սուլլան փորձում համոզել, թե նախաձեռնությունը գալիս է պարթևներից:

Երբ նա գտնվում էր Եփրատի ափին, նրա մոտ եկավ պարթևաց թագավորի դեսպան Օրոբազոսը, որը հետամուտ էր Հռոմի բարեկամությանը: Դեսպանը տեսակցություն խնդրեց դաշնակցության ու բարեկամության վերաբերյալ բանակցություններ վարելու համար: Այդ կապակցությամբ Սուլլան առիթը բաց չի թողել մեզ մի զավեշտական պատ-

---

* A p p i a n i. Mithr., *13. Նիկոմեդեսի դեսպանները Միհրդատի զորավարների հետ իրենց հանդիպման ընթացքում ակնարկում են, որ նա նույնիսկ խնամիական կապ է հաստատել Հայի հետ:*

** J u s t., XXXVIII, *3. Նույն պատմիչի բերած Միհրդատի ճառում վերջինս բողոքում է, որ հռոմեացիներն իրեն մեղադրում են Գորդիոսի և Տիգրանի արարքների համար* ("Imputari sibi, si qua Gordius aut Tigranes faciat"):

*** S t r a b o, XII, 2,1.

**** Plutarchi vitae. Sulla, 5.

***** A p p i a n i. Mithr., *57. Միհրդատի հետ բանակցությունների ժամանակ Սուլլան հիշեցնում է, որ ինքը Արիոբարզանեսին վերահաստատել էր Կապպադովկիայում:*

մություն ավանդելու: Հանդիպման ժամանակ հռոմեացի զորավարը երեք բազմոց էր նախապատրաստել իր, Արիոբարզանեսի և պարթևաց դեսպանի համար: Ընդունելության ընթացքում զորավարը բազմել էր կենտրոնում, իսկ կողքերին դեսպանն ու Կապպադովկիայի թագավորը: Պարթևների թագավորը դժգոհ մնալով այն բանից, որ դեսպանը պատվավոր տեղը զիջել էր հռոմեացուն, սպանել է տալիս Օրոբազոսին :

Կարևորն այն է, որ Միհրդատի և Տիգրանի քաղաքական մերձեցումը պատճառ հանդիսացավ, որպեսզի երկու խոշորագույն տերությունները՝ Հռոմն ու Պարթևստանը, անհրաժեշտ համարեին պայմանավորվել Հայաստանի և Պոնտոսի տարածքային հետագա ծավալումը կասեցնելու համար: Այսպիսով, դա հիմք դրեց մի քաղաքականության, որը պետք է դարերի խորքից գոյատևեր մինչև մեր օրերը, դառնար պարտավորեցնող մի դեղատոմս բոլոր ժամանակների քաղաքագետների համար:

Բացասական լուրջ հետևանքներով հղի այդ ակտը ստիպեց Տիգրանին ու Միհրդատին ավելի սերտացնել իրենց բարեկամությունը և կնքել քաղաքական դաշինք[19]:

Փոխադարձ համաձայնությամբ Միհրդատին էին անցնում «նվաճված քաղաքները, իսկ Տիգրանին գերիները և ամբողջ ավարը»[**] :

Կնքված դաշինքի հետևանքով Միհրդատը դուրս է քշում Բյութանիայի արքա Նիկոմեդեսին, որի տեղը հաստատում է նրա ախոյան Քրեստոս կոչեցյալ Սոկրատեսին[20]՝ հուսալով, այդ միջոցով իրեն ենթարկել Բյութանիան: Սա Միհրդատի մշտական քաղաքականությունն էր կրակից շագանակներ հանել ուրիշների ձեռքերով: Գահընկեց թագավորը ապաստանում է Հռոմում: Հենց այդ ժամանակ երկու զորավարներ՝ Միթրասը և Բագոասը (միգուցե՞ Տիգրանի հրամանով) գրավում են Կապպադովկիան և երկրորդ անգամ Արիոբարզանեսին վտարելով կրկին գահ են բարձրացնում Արիարաթեսին[***] :

Հռոմը բռնում է վտարված թագավորների կողմը և պահանջում նրանց վերականգնել գահին: Այդ հրամանի կատարումը հանձնարարվում է Մանիոս Աքվիլլիոսին և Մանլիոս Մալտինոսին[****] : Վերջիններս հաջողությամբ են կատարում իրենց միսիան: Միհրդատը ենթարկվում է հռոմեացիների պահանջին. «Նա Կապպադովկիայից հետ կանչեց իր որդուն»

---

* P l u t., Sulla, 5.

** Այս պայմաններին առանձնապես չհավատալու պատճառներ կան: Ավելի ուշ Տիգրանը ասպատակեց Կապպադովկիան և Կիլիկիան՝ 12 քաղաքների բնակիչներին իր նոր մայրաքաղաքը վերաբնակեցնելու համար: Ինձ թվում է, որ 92 թ. կնքված պակտի այսպես կոչված պայմաններն ընդամենը ենթադրություններ են, որոնք հիմնվում են Տիգրանի հետագայում կատարած գործողությունների վրա:

*** Թ. Ռեյնակը կարծում է (Th. R e i n a c h. Mithridate Eupator roi de Pont, p. 115), թե այդ զորավարները հայեր էին: Ապպիանոսն այդ մասին ոչինչ չի հաղորդում և մենք նույնիսկ հաստատապես չգիտենք, թե պատմիչը ո՞ր արշավանքը նկատի ունի: Արդյո՞ք խոսքը Կապպադովկիա կատարած երկրորդ արշավանքի մասին է, որն, ինչպես ենթադրում է պատմիչը, տեղի է ունեցել 90 թ., թե՞ խոսքը 95 թ. տեղի ունեցած առաջին արշավանքի մասին է:

**** J u s t., XXXVIII, 3. Պոմպեոս Տրոգոսը տալիս է միայն Մանիոս Աքվիլլիոսի անունը:

Արիոբարզանեսի տեղն ազատելու համար և «Հռոմեացիներին հաճոյանալու համար սպանեց Քրեստոսին՝ Բյութանիայի արքային»*:

Վերականգնված թագավորներից հռոմեացիները պահանջում էին պատերազմ սկսել: Պատերազմելու համար միջոցներ հայթայթելու նպատակով Նիկոմեդեսը, հռոմեացի զորավարների դրդմամբ, ներխուժում է Պոնտոս: Միհրդատը Պելոպեդեսին ուղարկում է հռոմեացի զորավարների մոտ և բողոքում Նիկոմեդեսի վարքագծի դեմ: Հռոմեացիների պատասխանը չափազանց երկիմաստ էր: Ծարահատյալ Միհրդատը ներխուժում է Կապպադովկիա, վտարում Արիոբարզանեսին և հաստատում այնտեղ իր որդի Արիարաթեսին**:

Հռոմը չհանդուրժեց այս իրավիճակը և սկսվեց իսկական պատերազմը: Հռոմեական բանակն ուներ մոտ 150000 զինվոր: Հռոմեական ժողովրդի դաշնակից ու բարեկամ Նիկոմեդեսը հավաքագրեց 50000 հետևազորայիններ և 6000-ոց հեծելազոր: Միհրդատի բանակը կազմված էր 250000 հետևակայիններից և 40000 հեծյալներից: Փոքր Հայքը տրամադրել էր 10000 հեծյալ՝ Միհրդատի որդի Արկաղիասի հրամանատարության ներքո (ես չեմ կարծում, թե նրան կարելի է նույնացնել Արիարաթեսի հետ): Այն փաստից, որ Փոքր Հայքի բանակը չի թվարկվում ընդհանուր զորքի մեջ, մենք կարող ենք հանգել այն հետևության, որ այս երկիրն այդ ժամանակ կցված էր Կապպադովկիային***: Սակայն ո՞ւր է Կապադովկիայի քանակակազմը: Դեռևս պետք է պարզել, թե ո՞ր թվականին է Փոքր Հայքն ընկել Միհրդատի տիրապետության տակ[21]:

Ի չարս Միհրդատի զորավարների, հիշատակում են նաև հայ Նեմանեսին, որը մասնակցել է ճակատամարտին և որին նույնացնում են Միհրդատի կողմից Հռոմ ուղարկված դեսպանի հետ****:

Պատերազմն ավարտվում է 84 թվականին, 73 թվականին վերսկսվելու համար:

Քանի դեռ Միհրդատը պատերազմում էր Հռոմի դեմ, Տիգրանը բազում անելիքներ ուներ Արևելյան ճակատում հռոմեացիների դաշնակից պարթևների դեմ: Հակառակ ոմանց պնդումների, պարթևներն այդ ժամանակ թույլ չէին: Տիգրանի ժամանակակիցը պարթևաց թագավոր Միհրդատն էր, որը ստացել էր «Մեծ» տիտղոսը (123–86)[22]: Պարթևների քաղաքական գործունեությունը սկսվել է մ.թ.ա. III դարի կեսերից, սակայն նրանց հզորության իրական ժամանակաշրջանը համընկնում է Հայաստանում Արտաշեսյանների հարստության սկզբնավորման հետ: Ուստի, պարթևները և հայերը բեմահարթակ են դուրս եկել գրեթե միաժամանակ: Նրանց միջև խուլ թշնամանք գոյություն ուներ Սելևկյան ժառանգության համար: Միհրդատ Մեծի թագավորության ժամանակ կշեռքի նժարը թեքվում է պարթևների կողմը: Հաղթանակած թագավորը, որը գտնվում էր իր փառքի գագաթնակետին, առաջինը յուրացրեց Աքե-

* J u s t. XXXVIII, 5. Նաև A p p i a n i. Mithr., II.

** A p p i a n i. Mithr., 15.

*** Th. R e i n a c h, s. 122.

**** G a f f i. Bullettino della commissione archeologica commande di Roma, 1886, N403 (վերցված է Ռեյնակից՝ էջ 456).

մենյանների «արքայից արքա» տիտղոսը[*]: Հայոց Թագավոր Տիգրանը վիճարկում է այդ տիտղոսը և այն խլում Միհրդատի հաջորդներից: Գերիշխանության համար Տիգրանի մղած պայքարը և նրա վերջնական հաղթանակը կազմում են Արևելքի պատմության ամենափառահեղ էջերից մեկը: Արդի պատմաբանները սխալվում են, չընդունելով նրա մեծությունը (ի դեպ, նրանք այս հարցում հետևում են անտիկ հեղինակներին, առանց մտահոգվելու սլատմությանը քննական մոտեցում ցուցաբերելու մասին: Կատարելապես ճիշտ է, որ «բոլոր սխալներից ամենավատը այն սխալն է, որը վերցված է ուրիշից»: Հին հեղինակները որդեդրել են սահմանափակ և միևնույն ժամանակ ազգային կողմնակալությամբ տոգորված պատմական հայեցակետ): Տիգրանը չի վայելել պատմիչների բարյացակամությունը, ինչպես նրա դաշնակից Միհրդատը: Միհրդատ Եվպատորը Հռոմի հակառակորդն էր և դա բավարար էր, որպեսզի պատմիչները նրան դարձնեին կենտրոնական գործող անձ, արեգակի պես մի բան, որի շուրջը պտտվում էին նրան ժամանակակից մնացած բոլոր գործող անձինք, որպես հասարակ մոլորակներ:

Գահ բարձրանալով Միհրդատից ավելի ուշ, Տիգրանն իրեն դրսևորեց որպես խոշոր աշխարհակալ և կարճ ժամանակահատվածում ստեղծեց Միհրդատի տերությունից առնվազն տասն անգամ ավելի մեծ կայսրություն, որը տարածվում էր Կովկասից մինչև Պաղեստին և Կապպադովկիայից մինչև Մեծ Մարաստան: Հին պատմիչները, որոնք ավելի էին սիրում իրենց Պլատոնին, քան ճշմարտությունը, զարմանալի հնարամտություն են ցուցաբերել պատմական իրողությունը աղավաղելու և Տիգրանի աչքի ընկնող կերպարը աղճատելու համար: Արդի պատմաբանները ոչ քննադատաբար են հետևել հին պատմիչներին: Նրանք, ովքեր զբաղվել են Միհրդատի գործունեության ուսումնասիրությամբ, աշխատել են Հայոց Թագավորին ներկայացնել որպես հասարակ մի գործիք Միհրդատի ձեռքում: Պոնտոսի Թագավորը ձգտում է «ելնելով իր շահերից օգտագործել Տիգրանին» կամ «Տիգրանի շնորհիվ հաղթանակներ տանել»[**]: Տիգրանին որպես Պոնտոսի Թագավորի կամակատար տեսնելու ցանկությունն այնքան է շեշտվում, որ պատմաբանները պատրաստ են նրան դատապարտելու իր սեփական ուղիով գնալու համար: Այսպես, Տիգրանին և Միհրդատին «հարձակողական և պաշտպանական դաշինքով» միմյանց հետ կապելուց հետո, նրանք վրդովվում են, որ Հռոմի դեմ Միհրդատի վարած պատերազմի ընթացքում Տիգրանն իր պարտավորությունների փոխարեն «մտածում էր միայն իր երբեմնի նվաստացումների համար պարթևներից վրեժխնդիր լինելու մասին»[***]:

Փաստորեն, նրանց կարծիքով, Հայոց Թագավորը պետք է իր երկիրը թողներ պարթևների ճիրաններում, Միհրդատին օգնության շտապելու համար: Ապա, այդ դեպքում ինչո՞ւ նրանք չեն դատապարտում Միհրդատին, որն անտեսելով իր պարտավորությունները, օգնության չէր

* Այս և հետագա երեք մեջբերումների Թերթիկները Թափված են:
** Նույն տեղում:
*** Նույն տեղում:

*նկել Տիգրանին, որը միայնակ պայքարում էր պարթևների դեմ: Այս չէ՞ արդյոք իրերի տրամաբանությունը:*

*Տիգրանի և Միհրդատի կնքած պայմանագրի մանրամասները մեզ հայտնի չեն: Այնուհանդերձ, անկասկած է, որ այդ փաստաթուղթը բխում էր պայմանավորվող կողմերի ընդհանուր շահերից: Այն պահին, երբ Միհրդատը անհաջողություն կրելով, հույս ուներ, դաշինքի համաձայն, Տիգրանից օժանդակություն ստանալու, պարթևները, պարտություն կրելով Տիգրանից, իրենց հերթին հույս էին դնում Հռոմի վրա կասեցնելու հայոց թագավորի առաջխաղացումը: Տիգրանի և Միհրդատի դաշինքը ուղղակի աղերս ուներ Հռոմի և Պարթևստանի մերձեցման հետ: Երկու թագավորները պետք է գործեին, մեկը Հռոմի, մյուսը պարթևների դեմ: Այստեղից էլ նրանց դաշինքը, ինչպես նաև նրանց հակառակորդների հակադաշինքը: Միհրդատն անպայման կարիք ուներ ապահովելու իր արևելյան թիկունքը Հռոմի դեմ պատերազմելու համար: Իր կողմից Տիգրանն էլ, Պոնտոսի թագավորի հետ դաշինք կնքելուց հետո, կարող էր ազատորեն իր ուժերը չափել պարթևների հետ: Անշուշտ, այս դաշինքի առաջին անմիջական հետևանքներից մեկը Տիգրանի զորքերի ներխուժումն էր Կապպադովկիա, այնտեղ Գորդիոսին (այն անձնավորությունը, որը բանակցել էր Տիգրանի և Միհրդատի դաշինքի վերաբերյալ) հաստատելու համար: Դա, անկասկած, հօգուտ Միհրդատի կատարված քայլ էր: Բայց պակաս ճիշտ չէ նաև այն, որ Կապպադովկիայի հարցի ռազմական նման լուծումը պարտադրվում էր Տիգրանին իր սեփական քաղաքական շահերից ելնելով: Հայոց թագավորը նոր էր բռնակցել Ծոփքը իր թագավորությանը, որն ավանդական, բարեկամական կապեր ուներ Կապպադովկիայի հետ: Ժամանակին Կապպադովկիան, հակադրվելով Արտաշես թագավորի նվաճողական ծրագրերին, փրկել էր Ծոփքին: Ավելի ուշ Ծոփքը փոխարենը սատարել էր Արիարաթեսին՝ Միհրգատի դեմ նրա պայքարում: Ծոփքը հնարավոր կապպադովկիական վտանգից պաշտպանելու համար, հասկանալի է, որ Տիգրանին անհրաժեշտ էր Կապպադովկիայում վստահության ներշնչող դաշնակից ունենալ: Այդպիսի մեկը Գորդիոսն էր, և Տիգրանը նրան վերահաստատեց Կապպադովկիայի գահին: Նա դեռևս այլ առիթներ կունենա այդ նույն պատճառով միջամտելու Կապպադովկիայի հարցին:*

*Տիգրանի հետ դաշինք կնքելուց հետո, Միհրդատը իր բավականին գրգռիչ վարքագծով պատերազմ հրահրեց Հռոմի դեմ*[1]*: Դրա համար պատրվակ ծառայեցին Կապպադովկիայի և Բյութանիայի հարցերը: Մի քանի ամսվա ընթացքում հավակնոտ աշխարհակալը իրեն ենթարկեց Փոքր Ասիայի մեծ մասը, Արշիպելագը և Հունաստանը: Նա սին հաղթանակներ էր տոնում, երբ հռոմեական լեգեոնների գլուխն անցած Սուլլան ափ իջավ Ասիայում: Մ.թ.ա. 86 թ. երկու գլխավոր ճակատամարտերում՝ Բեովտիայում (Քերոնեայի մոտ) և Օրքոմենայում Միհրդատը պարտություն կրեց և ստիպված էր մ.թ.ա. 85 թ. ստորագրել Դարդանոսի հաշտության պայմանագիրը հրաժարվելով իր բոլոր նվաճումներից: Խաղաղությունը շարունակվեց 12 տարի: Այդ ընթացքում Միհրգատի անդորրը չվրդովվեց: Սակայն Հռոմն իր նկատառումներն ուներ և Դարդա-*

նոսի հաշտության պայմանագիրը նրա կողմից չվավերացվեց: Մ. թ. ա. 73թ. Հռոմը վերսկսեց ռազմական գործողությունները Միհրդատի դեմ:

Միհրդատն էր, որ իր անխոհեմ քայլերով Հռոմին առաջնորդեց դեպի Հայաստանի սահմանները:

## բ. ՏԻԳՐԱՆ ՄԵԾ

Տիգրան Մեծն իր արժանավայել տեղը պետք է զբաղեցնի Արևելքում երբևէ իշխած տիրակալների շարքում: Նա արժանացել է «Մեծ» տիտղոսին պատվավոր մի կոչման, որը պատմությունը հազվադեպ է շնորհում իր ընտրյալ դերակատարներին:

Համեմատաբար կարճ ժամանակահատվածում Տիգրանին հաջողվեց ընդարձակածավալ մի տերություն ստեղծել, որը տարածվում էր Կովկասյան լեռնաշղթայից մինչև Պաղեստին և Կապպադովկիայից մինչև Մեծ Մարաստան: Պատմության մեջ առաջին անգամ Հայաստանը հաջողությամբ դուրս եկավ համաշխարհային պատմության առաջին շարքերը և իր կամքը պարտադրեց Արևելքի երկրներից շատերին:

Տիգրանն իրեն դրսևորեց որպես աշխարհակալ և լուսավորիչ: Նրա կատարած գործը պետք է ուսումնասիրվի և ներկայացվի առավել անաչառ և ավելի բարեխղճորեն, քան դա արվել է հին և արդի պատմաբանների կողմից, որոնք ավելի տոգորված են եղել հռոմեական հայրենասիրությամբ, քան պատմական ճշմարտության սիրով: Պատմական իրականությունը կեղծվել է հօգուտ Հռոմի փառքի, Տիգրանի աչքի ընկնող կերպարը աղճատվել է հօգուտ նրա ռազմական հակառակորդների վարկի: Տիգրանի պատվերով գրված պատմությունները մեզ չեն հասել: Այն ամենը, ինչ պատմում են հին պատմիչները, տեղեկություններ են, որ հաղորդել են ասիական ռազմարշավները ղեկավարած զորավարները: Ռազմի դաշտից զորավարների կողմից Հռոմի Սենատին ուղարկված զեկույցներն այնքան էլ արժանահավատ չեն, արժանահավատ չեն նաև նրանց ուղեկցող հեղինակների շարադրանքները, քանզի դրանք չափազանց կողմնակալ են:

Արդի պատմաբանները հետևում են այդ զեկույցներին և պատմիչների շարադրանքներին առանց քննական մոտեցում դրսևորելու և կրկնում են այն բոլոր անհեթեթությունները, որ նրանք հաղորդել են Տիգրանի և Արևելյան իրադարձությունների վերաբերյալ: Եթե լսելու լինենք այդ պատմիչներին, ապա Տիգրանը՝ Արևելքի այդ ամեհի տիրակալը, կատարյալ ոչնչություն էր, զուրկ ամեն տեսակի արժանիքներից և առաքինություններից: Որքան նրանք չափազանցնում են հռոմեացի զորավարների արժանիքները, նույնքան էլ արժեզրկում են հայ միապետի արքայական և մարդկային արժանիքները: Տիգրանի մասին հռոմեացիների գրած պատմությունները կասկածելի, կամ, առնվազն, ակնհայտորեն չափազանցված են թվում:

Երևակայական մանրամասները, ծիծաղաշարժ տեսարանները, որոնցով հարուստ են ստրկամիտ գրողների նկարագրությունները, կոչված են ցուցահանելու հաղթանակած հռոմեացիների իմաստնությունն ու ճարպկությունը, և ցուցադրելու նրանց պարտված հակառակորդների

ոչնչությունը: Իրականությունը, սակայն, ոչ մի կապ չունի նման հերյուրանքների հետ: Բոլոր այն դեպքերում, երբ հռոմեացիների հնարագիտությունը հակադրվում է նրանց հակառակորդների հիմարությանը, մենք կարող ենք վստահ լինել, որ գործ ունենք միտումնավոր կեղծիքի հետ, որը պատմական որևէ արժեք չի ներկայացնում:

Տրամաբանական զգոնությունն է միայն, որ մեզ հնարավորություն է ընձեռում հայ-հռոմեական հարաբերությունների մասին հին պատմիչների հաղորդած տեղեկությունների վերաբերյալ քննական մոտեցում դրսևորել: Հակառակ դեպքում կդառնանք միտումնավորության ու կեղծիքի ակամա զոհ: Իսկ դա պակաս վտանգավոր չէ, քան ինքը կեղծիքը:

Ավարտելով Իտալիայի նվաճումը, Հռոմը ձեռնամուխ եղավ միջերկրածովյան ավազանում՝ Կարթագեն, Իսպանիա, Գալիա, Հունաստան, Փոքր Ասիա, Ասորիք և Եգիպտոս, իր գերիշխանությունը տարածելու գործին:

Փոքր Ասիայի թագավորություններն իրեն ենթարկելու համար Հռոմը կիրառում էր «Բաժանի՛ր և տիրի՛ր» քաղաքականությունը: Պահպանելով և խրախուսելով տեղական դինաստների հակամարտությունները, նա խոչընդոտում էր այդ տարածքներում որևէ հզոր պետության ստեղծմանը: Տեղական դինաստներին գժտեցնելով միմյանց հետ՝ Հռոմը լուրջ դժվարությունների չհանդիպեց այդ թագավորությունները հարաճուն կերպով կլանելու գործում: 146 թ. Մակեդոնիան և Հունաստանը համալրեցին հռոմեական պրովինցիաների թիվը[35]: Քիչ անց՝ 133 թ. Պերգամի թագավորությունը նույնպես բռնակցվեց Հռոմին: Բյութանիան, Կապպադովկիան և Պոնտոսը մեկը մյուսի հետևից անկում ապրեցին: Կիլիկիան և Ասորիքը վերածվեցին հռոմեական պրովինցիաների[36]: Միջերկրական ծովի ողջ ավազանը պատկանում էր Հռոմին: Փոքր Ասիայի և Ասորիքի նվաճման համար մղվող պատերազմներով էր նշանավորվում Հռոմեական հանրապետության գոյության վերջին հարյուրամյակը: Կործանարար մի պատերազմ, որը լուրջ հետևանքներ ունեցավ թե՛ Հռոմի և թե՛ Արևելքի համար: Հռոմի հանրապետական վարչակարգի փլուզումը և միապետության հաղթանակը պետք է դիտվեն որպես Արևելյան աշխարհի հետ հպման հետևանք:

Պատմաբանները հաճախ իդեալականացնում են Ասիական պատերազմները, դրանց վերագրելով լուսավորչական նպատակներ: Այդ պատերազմները վարող զորավարները փառաբանվել են որպես առասպելական հերոսներ: Սակայն բուն իրականությունը այդքան լուսավոր չէ, ինչպես այն ներկայացվում է ի հեճուկս հռոմեական հայրենասիրության:

Հանրապետությունն իր վերջին տարիներն էր ապրում: Նվաճումներն իրենց հետ բերում էին բարքերի փոփոխություններ և հարվածում էին անհատական ու հասարակական բարոյականությանը: Հին առաքինությունները նահանջում էին նյութական բարգավաճման առջև, որը դառնում էր անհրաժեշտ գործոն բոլոր նրանց համար, ովքեր հասարական կյանքում հավակնում էին առաջնակարգ դեր կատարելու: Նոր բարքերը միայն սրում էին հասարակական հարաբերությունները: Սրվում էր

դասակարգային պայքարը պլեբեյների և ազնվականական օլիգարխիայի միջև:

Զինվորական ռեֆորմը, բանակը մատչելի դարձնելով բոլոր քաղաքացիների համար, չունևոր դասակարգի շահերին ծառայելու փոխարեն կործանարար մի գործիք դարձավ հավակնոտ մարդկանց ձեռքում: Աղքատության հետևանքով ստորին խավը զանգվածաբար բանակ էր գնում: Այսուհետև զինվորական ծառայությունը դարձավ մասնագիտություն: Յուրաքանչյուր ոք կարող էր ստեղծել վարձկանների բանակ, եթե ուներ դրա հնարավորությունը: Նախ և առաջ անհրաժեշտ էր կարողություն դիզել զինվորներ վարձելու հնարավորություն ունենալու և նրանցից համախոհների զորք կազմելու համար: Զորք, որը նվիրված կլիներ և առաջ կտաներ իրեն վարձած անձանց հասարակական հավակնությունները և նրանց կբարձրացներ հանրապետության քաղաքական կյանքի առաջին շարքերը:

Կարողություն դիզելու համար չէր անտեսվում և ոչ մի միջոց. «Պատրաստ են,— գրում է պատմիչը,— ոտնահարել պատիվը, պատշաճությունը, աստվածային և մարդկային օրենքները, ազատվել հարգանքից և ամոթից»*: Գավառի կառավարչի պաշտոնը ամենաբաղձալին էր, դրա ընձեռած նյութական օգուտների և այն հնարավորությունների պատճառով, որ այն տալիս էր կարողություն դիզելու ցանկությամբ տոգորված անձանց: Շատ հաճախ կարողություն դիզելու համար դերադասում էին գնալ Արևելք: Արևելք էին գնում նաև զինվորական փառք վաստակելու համար լիներ դա իրական, թե երևակայական փառք, քանզի դա անհրաժեշտ նախապայման էր Հռոմում իշխանության գալու համար:

Ասիական պատերազմներն ավելի նման էին արկածախնդրության, քան կշռադատված ձեռնարկումների այն առումով, որ դրանք նախաձեռնում էին այնպիսի մարդիկ, որոնք առաջնորդվում էին իրենց անձնական շահերով: Այդպիսիներն ավելի շուտ մտահոգված էին անցողիկ փառք վաստակելու խնդրով, քան հասարակական ու պետական շահով: Ազգային թագավորությունների գոյությունը ամենևին էլ չէր սպառնում Հռոմի մեծությանը, և նրանց ոչնչացումը նույնպես ոչինչ չավելացրեց նրա փառքին: Այդուհանդերձ, ազգային անկախության այդ փոքր կենտրոններն ոչնչացվեցին Հռոմի կողմից: Այն զորավարները, որոնք հեշտ հաղթանակներ էին տենչում, սրեցին իրենց թուրն Արևելքում, որպեսզի հետագայում, բախտի քմահաճույքով, դրանով խոցեին հանրապետական վարչակարգի սիրտը:

Չափից ավելի փառաբանված և գովասանքներով ընդելուզված այդ անձինք ծայրահեղ չարագուշակ դեր խաղացին մեռնող հանրապե-

* Հատկանշական է հատկապես Գայոս Սալուցիոս Կրիսպոսի օրինակը: Նա ծնվել է Հռոմի թվականության 657 թվականին, այսինքն մ.թ.ա. 87 թվականին: 59 թ. դարձել է քվեստոր, 52-ին տրիբուն և հեռացվել ծերակույտից: 47 թ. դարձել է պրետոր, իսկ 46-ին նշանակվել Աֆրիկա Նովայի պրոկոնսուլ: Գրեթե սնանկացած հեռանալով Հռոմից, նա վերադառնում է իր հպատակներից թալանած կարողությամբ: Կաշառակերության համար մեղադրվելով, նա արդարացվում է իր մշտական խնամակալ Կեսարի ջանքերով: Պալատինում գեղեցիկ այգիներով շրջապատված մի շքեղ պալատ է կառուցում, ուր և ապրում է ճոխության և գեխության մեջ և այդ պալատում էլ մահանում է 51 տարեկան հասակում (մ.թ.ա. 36թ.):

տության դրամայում: Մարիուսից[27] սկիզբ առնող բռնապետների շարքի յուրաքանչյուր հաջորդը իր հերթին նպաստեց դարավոր վարչակարգի անկմանը: Եթե պլեբեյ Մարիուսը և պատրիկ Սուլլան իրենց դասակարգերի շահերին նվիրված կուսակցությունների առաջնորդներ լինելու պատիվն ունեին, ապա նրանց հաջորդները՝ Պոմպեոսը, Կրասոսը, Կեսարը, Անտոնիոսը, Օկտավիանոսը անտեսում էին ինչպես պետության, այնպես էլ ցանկացած կուսակցության շահերը: Նրանց առաջնորդող միակ կիրքը իշխանատենչությունն էր: Նրանց պակասում էր ոչ թե գերագույն իշխանությունը զավթելու ցանկությունը, այլ վճռական գործողությունների դիմելու խիզախությունն ու հաստատակամությունը:

Այսպիսով, նրանք համաձայնության եկան և միավորեցին իրենց ուժերը ու եռապետության անվան տակ դաշինքի պես մի բան կնքեցին: Երեք աստղերից՝ Պոմպեոսից, Կեսարից և Կրասոսից, կազմված առաջին եռապետությունը ստեղծվելուն պես քանդվեց՝ պարթևների դեմ ձեռնարկած արկածախնդրական արշավանքում Կրասոսի սպանվելու հետևանքով: Պոմպեոսը զոհ գնաց Կեսարի հետ մրցակցությանը, իսկ վերջինս էլ սպանվեց մահամերձ հին վարչակարգի վերջին ազնիվ դեմքերից մեկի՝ Կասիոսի[28] կողմից:

Օկտավիանոսը և Անտոնիոսը մեկը Կեսարի զարմիկը, մյուսը նրա զորականներից, երրորդ մի անձնավորության՝ Լեպիդոսի հետ 43 թվականին կազմեցին երկրորդ եռապետությունը: Երեք ախոյանների միջև շուտով քաղաքացիական պատերազմ սկսվեց: Այն ավարտվեց 31 թվականին Ակցիումի ճակատամարտով և հանգեցրեց Հռոմում միապետական կարգերի հաստատմանը: Դարավոր վարչակարգը անկում ապրեց և Օկտավիանոսը հիմնադրեց նոր կայսրություն՝ նմանակելով Արևելքի մեծ կայսրություններին: Հենց սա էր Ասիական պատերազմների ընթացքում Արևելքի հետ Հռոմի շփումների անմիջական արդյունքը: Հռոմի արևելյան այս քաղաքականության դեմ էր, որ իր կարճեցյալ դաշնակցից՝ Միհրդատից նենգված, հաստատակամորեն պայքար էր մղում ժամանակի Արևելքի մեծագույն դեմքը՝ Տիգրան Մեծը:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ատտալոս III (139–133 թթ.):
2. Արիստոնիկոս (Եվմենես III, 133–129 թթ.): Իրականում սա Եվմենես II-ի (197–160) ապօրինածին որդին էր:
3. Միհրդատ V Էվերգետես (150–121 թթ.):
4. Արիարաթես V Եվսեբես Փիլոպատոր (163–130 թթ.):
5. Արիարաթես VI Եպիփանես Փիլոպատոր (120–111 թթ.):
6. Միհրդատ VI Եվպատոր (121–63, փաստական՝ 111 թվականից):
7. Գորդիոս–փռյուգացի մեծատոհմիկ, Միհրդատ Եվպատորի խորհրդականը: Ընդմիջումներով՝ Կապադովկիայի թագավոր:
8. Նիկոմեդես III Էվերգետես (127–94 թթ.):
9. Արիարաթես VII Փիլոմետոր (111–100 թթ.):
10. Այսինքն՝ Լաոդիկեն:

11. *Արիարաթես Բարեպաշտ Փիլոպատոր (100–88 թթ.): Հետաքրքիր է, որ Միհրդատ Եվպատորի որդուն ներկայացրեցին որպես տեղական արքայատան շառավիղ:*
12. *Ապստամբությունը տեղի է ունեցել 96–95 թվականներին:*
13. *Արիարաթես VIII (96 թ.)՝ Արիարաթես VI Եպիփանեսի կրտսեր որդին, Արիարաթես VII Փիլոմետորի եղբայրը:*
14. *Խոսքը Արիարաթես VI Եպիփանեսի մասին է:*
15. *Արիարաթես V Փիլոպատորը զոհվել է մ.թ.ա. 130 թվականին, հետևաբար 100 թ. նրա որդին կարող էր լինել ոչ պակաս, քան 30 տարեկան, իսկ Արիարաթես Բարեպաշտը, ինչպես հայտնի է, ընդամենը ութ տարեկան էր: Ինչպես է Գորդիոսը փորձել լուծել այս հանելուկը, մնում է անհայտ: Կեղծիքն այնքան բացահայտ էր, որ Սենատը անմիջապես մերժեց այն:*
16. *Արիոբարզանես I Հռոմեասեր (95–62 թթ.):*
17. *Ն. Ադոնցը անտեսել է այն հանգամանքը, որ Արիոբարզանես I-ը թեև հռչակվել էր Կապպադովկիայի թագավոր, սակայն երկրի տարածքի մի մասը շարունակում էր մնալ Պոնտոսի գերիշխանության ներքո, ուր դեռևս թագավորում էր Միհրդատ Եվպատորի երիտասարդ որդին (մինչև 88 թվականը):*
18. *Այդ ժամանակ Ծոփքի արքան Արտանես Զարեհյանն էր:*
19. *Տողատակի ծանոթագրությունում (տե՛ս էջ 282) Ն. Ադոնցը պայմանագրի կնքման տարեթիվ է համարում 92 թվականը: Նորագույն գրականության մեջ նշվում է 94 թվականը:*
20. *Քրեստոս Սոկրատես–Նիկոմեդես IV-ի կրտսեր եղբայրն ու ախոյանը: Բյութանիայի թագավոր (94–91 թթ.):*
21. *Ըստ նորագույն ուսումնասիրությունների, Փոքր Հայքը Պոնտոսի տիրապետությանն է ենթարկվել մ.թ.ա. 112 թվականից:*
22. *Իրականում թագավորել է մինչև 87 թվականը:*
23. *Միհրդատ II Մեծը «արքայից արքա» սկսեց հորջորջվել 110 թվականից:*
24. *Նկատի ունի Միհրդատյան առաջին պատերազմը (89–84 թթ.):*
25. *Իրականում դա տեղի է ունեցել մ.թ.ա. 148 թվականին:*
26. *Պերգամը պրովինցիայի է վերածվել մոտ մ.թ.ա. 129 թ., Կիլիկիան՝ 92 թ., Պոնտոսը և Բյութանիան՝ 74–64 թթ., Սիրիան՝ 63 թ., իսկ Կապպադովկիան՝ մ.թ. 17 թվականին:*
27. *Գայոս Մարիուս (157–86 թթ.) – հռոմեական պետական և քաղաքական գործիչ, Սուլլայի քաղաքական հակառակորդը:*
28. *Գայոս Կասիոս Լոնգինոս (?–42 թ.) – հռոմեական ռազմական և քաղաքական գործիչ, Կրասոսի պարթևական արշավանքի մասնակից, պոմպեոսական:*